# ԿԱՏԱՐՎԱԾ ԵՐԱԶ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Սիմբիրսկ, սահադաշտ՝ դպրոցի բակում.
Քամին ձյուների
Ճերմակ մարմարն էր փափուկ քանդակում...
Սառնամանիքից կապտած սառույցը
Խսկվում էին չմուշկներն ահա,
Ասես սղոցում է ապակու վրա...
Մեկի գծածը մյուսը ջնջում
Ու սլացքի մեջ
Գալիս են թափով, իրար են դիպչում...
— Վոլո՛դյա, կընկնե՛ս...—
Իսկ նա սահում է
Եվ հետքերն ահա խաչաձևում է
Զույգ կայծակի պես...
— Վոլո՛դյա, կընկնե՛ս...—

Իսկ նա սահում է գլխաբաց, ազատ,
Շիկնել է դեմքը,
Եվ պսպղում են աչքերն հրացայտ...
Սահում է, սակայն նայում է անվերջ
Բլրակի վրա կանգնած մանչուկին,
Որ կծկվել է խեղճ,
Աչքերը հառած
Հենց Վոլոդյայի փայլուն չմուշկին...
— Ուզո՞ւմ ես սղալ, դե, ի՞նչ ես սառել,—
Այն մանչուկի մոտ Վոլոդյան հասնում
Եվ չմուշկներն իր ուզում է հանել:
Ժպտում է տղան.
— Ես միշտ երազում,
Չմուշկ եմ տեսնում...
Բայց դու մի՛ տուր ինձ, պետք չէ՛, Վոլո՛դյա,
Միևնույն է, ես չեմ կարող սղալ...
— Շուտ կսովորես, դժվար բան չկա:—
Մանչուկն այն, թեկուզ չմուշկներն հագնում,
Բայց ոտքի վրա կարգին չի կանգնում...
Վոլոդյան նրա թևի տակ մտած,
Առաջ է տանում...

— Հենվի՛ր ինձ վրա,
Ընկնես էլ, ոչինչ, և մի՛ վախենա...—
Ու մանչուկն այսպես հազիվ է քայլում
Ու գլորվում է,
Վոլոդյային էլ իր հետ տապալում...

Ելնում են նորից
Ու ծիծաղում են, սահում են նորից,
Մինչև, վերջապես,
Տղան պոկվում է նրա թևերից...
— Ավելի արա՛գ, էլ ի՞նչ ես նայում,—
Ծափահարում է Վոլոդյան ուրախ,
Ասես ոչ թե նա, այլ ինքն է սահում...

Ու երջանիկ էր մանչուկը այնքան,
Վոլոդյան չուզեց չմուշկներն առնել,
Թող մնա նրան...
— Վերցրու քեզ ու վե՛րջ,

Դե, որպես նվեր...—
Սակայն մանչուկն այն կարծես խռովեց,
Զղջաց Վոլոդյան, զուր վիրավորեց:
Ու երբ տուն եկավ,
Մայրը նկատեց.— Ի՞նչ կա, Վոլո՛դկա,
Տխուր ես այսօր:
— Մայրի՛կ, հիշո՞ւմ ես.
Այրի Շուրայի մինուճար որդուն...
— Ա՜խ, այն շեկ տղա՞ն...
— Այո՛, հենց նա է...
— Ի՞նչ է պատահել:
— Սովորեց սղալ:—
Մայրը զարմացավ.
— Նախանձո՞ւմ ես դու:
— Ո՛չ, ո՛չ, ես ինքս օգնեցի նրան.
Նա չմուշկ չուներ,
Իմ չմուշկներով սովորեց սղալ:
Հիմա, երբ գիտե,
Դժվար է արդեն չմուշկ չունենալ:
Նա միշտ երազում
Չմուշկ է տեսնում...
— Դու կարող էիր նվիրել նրան...
— Ես նվիրեցի, իսկ նա չվերցրեց,
Հպարտն է այնպես այդ շեկլիկ տղան:—
Մայրը ծիծաղեց.
— Հպարտությունն այդ լավ է սղալուց,
Բայց դու մտածիր և օգնի՛ր նրան...

Գիշերը հալվեց և առավոտյան,
Երբ տնից ելավ շեկլիկ այն տղան,
Մուտքի մոտ դռան
Մի զույգ փայլփլուն չմուշկներ տեսավ:
— Երազս ելա՞վ,—
Բայց Վոլոդյային հիշեց, կասկածեց.
— Կհարցնե՞մ նրան...—
Ու երբ երեկոն իջավ աստղանախշ,
Շեկոն սեփական իր չմուշկներով
Եկավ սահադաշտ:
Շրջապատեցին.
— Ա՜յ թե երազդ աստված կատարեց...
— Ուլյանովն ո՞ւր է,— շեկոն հարցրեց:
— Սղում է այնտեղ...
Մրցե՞լ ես ուզում գուցե նրա հետ...—
Եկավ Վոլոդյան իբրև անտեղյակ.
— Գնանք սղալու,— ասաց կեսկատակ,—
Չմուշկներ ունե՞ս, ա՜յ, քեզ կարգին գործ...
— Աստվա՜ծ ուղարկեց...
— Կուղարկի, բա ո՞նց...—
Վլադիմիրը ծիծաղեց զվարթ
Ու շեկլիկի հետ սահեց լանջն ի վար:



Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

# ԻՄ ԱՌԱՋԻՆ ՃՔԱՆՇԱՆԸ

*Վարդգես Բաբախանյանի վաթսունամյակին*

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Արջը ձեռնասուն էր:

Հին պիոներների հանրապետական հավաքի ժամանակ, երբ անտառի բացատում կերանք ավանդական խորոված կարտոֆիլը ու բոլորիս թվաց, թե կյանքում դրանից ավելի համեղ բան չենք կերել, Մուշեղը, հին, հին օրերի նման, ձգեց մեր սիրելի երգը.

Կռիվը, կռիվը սաստկանում է,
Մարտկոցն է որոտում,
Թշնամին նահանջում է,
Մենք առաջ ենք շարժվում...

Չգիտեմ ինչու աչքերս լցվեցին: Նայեցի Մուշեղին, Ամիլին, Սերոբին, Վարդգեսին... Ծերացել ենք, մտածեցի ես, ու երբ ուզում էի Մուշեղի հետ երգել, ձայնս կերկերաց:

— Արի՛,— ձեռքն ուսիս դրեց Վարդգեսը, որ մեր մեջ ամենից բախտավորն էր, քանի որ դեռ չէր կտրվել մանկությունից ու հիմա էլ Ծաղկաձորի բոլոր ճամբարների պետ էր նշանակված,— արի՛, բան եմ ցույց տալու:

Մուշեղը, Ամիլը, Արշոն դեռ երգում էին: Կրակվել էին, կարծես չէին բոլորել վաթսուն տարին:

Իսկ ես ու Վարդգեսը գնում էինք անտառի արահետով: Վարդգեսն ինձ տանում էր՝ իր օրինակելի ճամբարներով պարծենալու:

Այդ ժամանակ էր, որ արահետի վրա պատահեցինք արջին: Մի փոքրիկ տղա թոկից քաշելով տանում էր այնպես հանգիստ, կարծես հորթ էր տանում ջրելու...

Ես զարմանքից չռեցի աչքերս, Վարդգեսը ծիծաղեց:

— Երկուսի անունն էլ Միշա է,— ասաց,— արջին ասում ենք փոքր Միշա, տղային՝ մեծ Միշա: Բացի դրանից արջը պահակային ծառայության չի մասնակցում:

Տղան պիոներական պատիվ տվեց: Մենք պատասխանեցինք ու անցանք: Հետո Վարդգեսը ժպտաց.

— Հիշո՞ւմ ես, Օգնող ձեռք:

Ետ գնացին տարիները...



Իմ անունը Օգնող ձեռք էր, Վարդգեսինը՝ Կարմիր վրիժառու: Ես ոչ ոքի չէի օգնում, Վարդգեսը ոչ ոքից վրեժ չէր առնում, բայց սիրում էինք մեր անունները, դրանք հետաքրքիր էին ու խորհրդավոր:

Մեր ճամբարն անտառի բացատում էր: Այդտեղից երևում էր թուխպի մեջ կորած սարը, որին մենք Ալիբեկ էինք ասում: Այդ սարի գագաթից ձյուն էին բերում մեր ալպինիստները, այդտեղից իջնում էին արջերն ու անտառում հատապտուղ որոնում:

Արջերը մեր ճամբարի սարսափն էին: Ճիշտն ասած, դեռ ոչ ոք ոչ մի արջ չէր տեսել, բայց ոչ ոք չէր կասկածում, որ Ալիբեկից իջած արջերը վխտում են ճամբարի շուրջը և որ, իբր, հենց մի քանի օր առաջ անտառում, կաթնաղբյուրի մոտ նրանք հոշոտել են նախրից ետ ընկած մի կով:

Աղջիկները մութն ընկնելուն պես քաշվում էին վրաններն ու սսկվում: Մենք՝ տղաներս, ուզում էինք ավելի համարձակ երևալ, դրա համար էլ խարույկից ու տողանից հետո թափառում էինք վրանների առաջ, իրար սիրտ էինք տալիս ու պարծենում, թե ինչպես ենք հաղթելու արջին, եթե սա հարձակվի ճամբարի վրա:

Արշոն, որ ճամբարի պետն էր ու հազիվ մի հինգ տարով մեզանից ավագ, պահակայիններին «զինում» էր կարճ նիզակներով ու գրեթե չէր քնում գիշերները:

Սարսափն ավելի շատացավ, երբ մի օր խոհարար Առաքելն ասաց, թե բացօթյա պահեստից չքացել է մեղրի ամանը: Ասենք, ամանը գտան ոչ շատ հեռու, մի ծառի տակ, բայց դատարկ էր ու այնպես լպստած, որ կարծես լվացել էին տաք ջրով:



Բոլորը համոզված էին, որ արջն էր տարել ու ա՛նուշ արել մեր նախաճաշի մեղրը: Դե, հայտնի է, որ արջերը մեղր շատ են սիրում:

Արշոն հավաքեց մեզ՝ ավագ պիոներներիս, ու ասաց, որ այսուհետև պահակակետերում գիշերով երկուական պահակ պիտի կանգնեն, մեզ ցույց տվեց որսորդական հրացանը, որ բերել էր քաղաքից:

Ճամբարում ռազմական դրություն հայտարարվեց:



Բոլորն ուզում էին պահակակետում լինել Վարդգեսի հետ միասին: Կարմիր վրիժառուն մեր մեջ ամենաքաջն էր, թեև մարմնով բարակ, ինչպես ուռենու ճիպոտ:

Եվ հասկանալի է, թե ինչ երջանկություն էր ինձ համար, երբ երեկոյան տողանի ժամանակ իմացա, որ գիշերվա տասներկուսից մինչև երկուսը, Կարմիր վրիժառուի հետ հսկելու եմ ճամբարի հաղթական կամարը:

Այդ պահակակետն անտառի պռունկին էր: Համոզված էինք, որ անցյալ գիշերը հենց այդ կամարի տակով էր անցել գազանը, երբ եկել էր մեր նախաճաշի մեղրը մաքրազարդելու:

— Հո չե՞ս վախենում,— քմծիծաղով հարցրեց Վարդգեսը:

— Ե՞ս:

— Եսիմ, չվախենաս:

— Քեզ տես,— լոպազացա ես,— ուզում ես գնա քնիր, մենակ կհսկեմ:

Ուկի մեջքի վրա կընկնեի՞ որ: Հոխորտում էի, թեև, ճիշտն ասած, սարսափից էն է լեղիս ճաքելու էր:

— Ես,— ասացի,— ո՛չ արջից եմ վախենում, ո՛չ փղից, ո՛չ էլ ընկեր Բաբայանից:

Բաբայանին հիշեցի, որ ավելի հաստատ լինի խոսքըս, քանի որ Բաբայանից բոլորս էինք վախենում. մեր թվաբանության ուսուցիչն էր:

— Դե, լավ,— հաշտ ասաց Վարդգեսը,— լավ է, որ չես վախենում:

Ասում է, բայց զգում եմ, որ խոսքերիս չի հավատում: Դա կատաղեցնում է ինձ, լավ, մտածում եմ, Վարդգես տղա, տեղը կգա, կտեսնենք, թե ով ավելի քաջ կլինի:

Խարույկը վաղուց մարել էր: Մեր պահակակետից երևում էր մոխրակույտը, մեջը՝ տասնյակ կայծկլտուն աստղեր, վերջին կրակները: Ես ու Վարդգեսը կանգնել էինք հաղթական կամարի երկու կողմերում ու նիզակները ձեռքներիս աչալուրջ հսկում էինք քնած ճամբարը: Կամարից այնկողմ թանձրացել էր անտառը, քնել էր ամեն ինչ. թուփը, ծաղիկը, թիթեռը, նապաստակը, ոզնին... Բայց որտեղի՞ց էին գալիս այսքան անիմանալի ձայները. կոտրվող ճյուղի ճրթոց, նվաղուն սուլոցի նման մի ձայն, հազիվ լսելի մի թփոց, մի ծափ...



— Լսո՞ւմ ես,— ասաց Վարդգեսը,— արջերն են, անտառի պռնկին դարան են մտել:

— Դրանց հերն էլ անիծած,— մեծավարի ու գործնական պատասխանեցի ես,— թող մի մոտ գան, տեսնենք...

— Ա՛յ տղա,— գովեց ընկերս,— երևում է իսկապես չես վախենում:

— Բա ո՞նց գիտեիր,— կրկին աքլորացա ես:

Լռեցինք: Ես ականջ էի դնում անտառի ձայներին և աստիճանաբար խաղաղվում էի: Այժմ իսկապես չէի վախենում: Դուք գիտե՞ք, թե ինչքան լավ է, երբ չես վախենում և զգում ես, որ չես վախենում... Սիրտդ լցվում է մի քաղցր հպարտությամբ, այդ ժամանակ մի կարճ նիզակով ոչ միայն արջի, այլև, նույնիսկ, մամոնտի դեմ էլ կգնաս...

— Լսի՛ր, Օգնո՛ղ ձեռք, —հանկարծ ասաց Վարդգեսը,— սոված չե՞ս:

— Չէ՛:

— Ես սովածացա: Գիտե՞ս ինչ, պահակակետ գալուց առաջ ես խարույկի մոխրի մեջ մի քանի կարտոֆիլ եմ թաղել, հիմա խորոված կլինեն, գնա բեր ուտենք:

Ես չպատասխանեցի:

— Ասենք թե վախենում ես, դու կաց, ես գնամ, իսկույն կվերադառնամ:

— Կգնամ,— ասացի բարկացած,— ինձ ինչի՞ տեղ ես դրել:

Եվ գնացի:

Մինչև մարած խարույկը հարյուր քայլից ավելի չէր լինի: Ես գնում էի արագ, աչքս՝ մթնած անտառաեզրին: Անտառի ձայները գնալով ավելանում էին: Ես գլխի չէի ընկնում, որ ինքս եմ խտացնում աղմուկը, ախր անցնում էի հին խաշամի միջով...

Դեռ խարույկին չէի հասել, երբ հետևից մրթմրթոց լսեցի ու Վարդգեսի ձայնը.

— Հարո՛ւթ, հե՛յ, հասի՛, արջն ինձ գզե՛ց...

Մի ակնթարթ քարացա, նիզակը ձեռքիցս ընկավ: Բայց հաջորդ վայրկյանին ես արդեն հաղթական կամարն էի վազում, ազնիվ խոսք, ընկերոջս փրկելու ցանկությունը հաղթել էր վախին:

Կամարի տակ, կիսախավարում, արջն իսկապես գզում էր Վարդգեսին: Ընկերս պառկած էր փորի վրա, ձեռքերով ծածկել էր գլուխը, իսկ գազանն առջևի թաթերով բռնել էր նրա գոտկատեղից ու կարծես հունցում էր:

— Հե՛յ,— գոռացի ես:

Արջը վեր կացավ, առջևի թաթերը պարզած եկավ դեպի ինձ, արդեն հասնում էր, էս է գրկելու էր...

— Ես քու...— գոռացի խռպոտ ձայնով ու, չգիտեմ ինչպես եղավ, գլխով ուժեղ հարվածեցի գազանի փորին:

— Վա՜յ փորս,— լացակումած ասաց արջն ու պպըզեց:

Այդ ժամանակ անտառի պռնկին քրքիջ բարձրացավ: Հանկարծ ջահեր վառվեցին ու ամբողջ ճամբարն, Արշոյի գլխավորությամբ, շրջապատեց մեզ:

Արտոն վրայից հանում էր արջի մորթին ու փորը տրորում:

— Վա՛յ, չմեռնե՛ս դու, Հարո՛ւթ,— տանջանքով, բայց կես-ծիծաղ ասում էր նա,— փորս պատռեցիր:

Բոլորը ծիծաղում էին, իսկ Վարդգեսը ծիծաղից ուղղակի գալարվում էր խաշամի վրա:

***

Հաջորդ երեկոյան, խարույկի առաջ ինձ պարգևատրեցին, «քաջության համար»: Ես մի նոր կարմիր փողկապ ստացա, թեև Արտոն պնդում էր, թե ոչ թե քաջությունից, այլ սարսափից եմ գլխով հարվածել իր փորին:

Իսկ Արշոն ասաց, թե անտառում ոչ մի արջ էլ չըկա, թե Ալիբեկ սարից ընդամենը մի արջ է իջած եղել, նրան էլ երեք օր առաջ սպանել է որսորդ Մացակը և մորթին նվիրել մեր ճամբարին: Դա հենց այն մորթին էր, որ երեկ գիշեր, ինձ փորձելու համար, հագցրել էին Արտոյին:

Փողկապը հիմա էլ ինձ մոտ է, ես պահում եմ մեդալներիս հետ, որ ստացա Հայրենական պատերազմի ժամանակ:

Տասը տարի առաջ, երբ որդիս պիոներ դարձավ, աչք ուներ իմ փողկապի վրա: Ես նրա համար հինգ հատ մետաքսե փողկապ գնեցի, բայց իմ քաթանե փողկապը չտվի:

Ո՞վ է իր շքանշանն ուրիշին տալիս...

# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Սարից պոկվեց քամին եկավ,
Փեշը քսեց լճին կապույտ,
Փշաքաղվեց լիճը հսկա
Ու շաղ տվեց ցոլք ու փրփուր։

Առագաստը՝ ճերմակ շուշան,
Ծիածանվեց, կապեց կամար,
Լճի վրա՝ լուրթ մանուշակ,
Օրորվելով սահեց կամաց։

Սարսուռ անցավ մեջքով լճի,
Խայտաց, խաղաց ալիք-ալիք,
Առագաստը հեռվում վճիտ,
Դարձավ փոքրիկ մի խաղալիք։

Ինչու՞ այդպես արեց քամին,
Այդքան չար խաղ ինչու՞ խաղաց
Եվ փոթորկեց միանգամից
Կապույտ լճի քունը խաղաղ։

Խորհեց, նայեց Արան լճին,
Սրտում պահած մի խոր կարոտ,
Այդ ի՞նչ արեց չարաճճին՝
Խելառ քամին այս առավոտ։



# ԱՂՋԻԿՆ ՈՒ ՏՂԱՆ

ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Նրանք սովորում էին միասին ու նստում էին իրար կողքի: Իրար հետ խոսում էին հազվագյուտ դեպքերում միայն, որովհետև մեծ մասամբ խռոված էին լինում, այսինքն, ավելի ճիշտ, աղջիկն էր տղայից խռովում...

Հիմա էլ նստած էին իրար կողքի. աղջիկը՝ ձախ կողմում, տղան՝ աջ: Տղան նայում էր աղջկա ռունգերին. ախ, ռունգե՜րը, այդ ռունգե՜րը. ...Բայց աղջիկը չէր նայում տղային, այլ՝ գրատախտակին, որովհետև դարձյալ խռովել էր տղայից: Տղայի հայացքն աղերսական էր, աղջկանը՝ խիստ, և ռունգերն էլ թրթռում էին, որովհետև վայրացած էր. աղջկան միշտ էլ վայրացնում էր այն, որ տղան կամքի ուժ չուներ: Մինչդեռ աղջիկն ուներ կամքի ուժ. դա երևում էր հենց նրա թրթռացող ռունգերից: Իսկ տղայի ռունգերը չէին թրթռում, ու քիթն էլ մի քիչ գոնդոլ էր: Աղջիկը սիրում էր գործով ապացուցել ամեն բան, իսկ տղան՝ երդումներով. ու, երևի, հենց դրա համար էլ աղջիկը գերազանցիկ էր, իսկ տղան՝ հարվածային: Մինչդեռ աղջիկն ինչքա՜ն էր ուզում, որ տղան նույնպես գերազանցիկ լիներ: Տղան ինքն էլ ձգտում էր գերազանցիկ դառնալ, բայց չէր կարողանում, որովհետև, ինչպես որ, կամքի ուժ չուներ ու միայն առատ-առատ երդումներ էր գրում աղջկան: Գրում էր փոքրիկ թղթի կտորների վրա. գրածը թաքուն մեկնում էր աղջկան, և հաշտվում էին, չնայած որ աղջիկը համառորեն չէր հավատում տղայի գրած երդումներին: Նրանք, ընդհանրապես, իրար հետ գրավոր էին խոսում, այն էլ՝ միայն դասի ժամանակ: Մնացած պահերին ոչինչ չէին կարողանում ասել իրար. երկուսն էլ շփոթվում էին ու լռում: Նրանք այդ բանում իրար շատ էին նման. ամաչկոտ էին երկուսն էլ: Դասամիջոցներին աղջիկը խոսում էր միայն աղջիկների հետ, իսկ տղան՝ միայն տղաների. հատկապես Գագոյի հետ էր սիրում խոսել, չնայած այդ բանն էլ դուր չէր գալիս աղջկան: Դասերից հետո տղան հեռվից իր ընկերուհուն ուղեկցում էր դեպի տուն, հատկապես ձմռանը, որովհետև ձմռանը ձնագնդով խփում էին աղջիկներին: Աղջիկը գիտեր, որ տղան ամեն օր ուղեկցում է իրեն, ու երջանիկ էր: Նա շատ էր ուզում, որ տուն գնալիս էլ տղան իր կողքին լիներ, բայց չէր արտահայտում այդ ցանկությունը, որովհետև կամքի ուժ ուներ: Մինչդեռ տղան բոլորովին չուներ կամքի ուժ:

— Ունեմ,— երբեմն դասի ժամանակ պայթում էր տղան:

— Չունես,— հուսահատ հառաչում էր աղջիկը:

Հետո, երբ նրանք փոխադրվեցին ութերորդ դասարան, աղջիկն արդեն հաշտվել էր այն մտքի հետ, որ տղան այլևս երբեք գերազանցիկ չի դառնա:

— Կդառնամ,— համառորեն գրում էր տղան ու թուղթը թաքուն մեկնում աղջկան:

— Չես դառնա,— պատասխանում էր աղջիկը՝ նույնպես գրավոր:

— Կդառնամ, այ, կտեսնես:

— Դե երդվի՛ր:

Ու տղան նորից այնպիսի՜ առատ երդումներ էր գրում: Տղան առանց մտածելու երդվում էր, բայց չէր կարողանում կատարել տված երդումները. ամբողջ սրտով ուզում էր, բայց ուղղակի չէր ստացվում: Իսկ աղջիկն էլ տանել չէր կարողանում, երբ չէին կատարում տված երդումը, ու այնպե՜ս էր հիասթափվում տղայից: Բայց հետո դարձյալ ներում էր, ու հաշտվում էին, որովհետև... Ասենք. դա նրանց գաղտնիքն է: Այո, այո՝ նրանց սուրբ գաղտնիքը...

Նրանք մի բանում էլ էին շատ նման. երկուսն էլ գաղտնապահ էին, այնքան գաղտնապահ, որ դասարանում ոչ ոք չգիտեր ո՛չ նրանց վեճի, ո՛չ կռիվների, ո՛չ էլ հաշտության մասին: Նույնիսկ Գագոն չէր կարողանում կռահել, թե նրանք ինչ տեսակի հարաբերությունների մեջ էին իրար հետ. Գագոն, որ դասարանի ամենակռահող տղան էր ու մեծ երևակայության տեր: Ասենք, ավելի ճիշտը, Գագոն ուղղակի կռահելու վարպետ էր: Գագոն զգում էր, որ նրանց միջև ինչ-որ կապ կա, բայց թե ի՞նչ տեսակի ու որակի կապ էր դա՝ չէր կարողանում հասկանալ: Գագոն

վերջերս սկսել էր նկատել, որ նրանք թղթի կտորներ են մեկնում իրար, կարդում, ջնջում ու ծալմլում: Նույնիսկ մի անգամ նա կարողացավ նրանից ծալմլված թղթերից մեկը թռցնել ու կարդալ: Թղթի վրա գրված էր՝ «խռո՞վ ես հետս», «այո» ...և Գագոն միայն հասկացավ, որ նրանք խռով էին իրար հետ: Բայց թե ինչու՞ էին խռով: Ճիշտ է, Գագոն դեռ այնքան մեծ չէր, որպեսզի ամեն ինչ հասկանար, բայց արդեն տասնչորս տարեկան էր նա ու շատ լավ գիտեր, որ պատանի աղջիկն ու տղան առանց լուրջ պատճառի իրարից չեն խռովում... Խե՜ղճ Գագո. կարգին տանջվում էր այն մտքից, որ դասարանում ինչ-որ գաղտնիք կա, որ ինքը չի կարողանում կռահել: Եվ Գագոն հաստատ վճռեց պարզել այդ մութ հարցը ևս: Նա մի քանի ծալմլված թղթեր էլ թռցրեց նրանցից ու կարդաց.



«Բայց ինչու՞ ես խռով հետս»:

«Որ խոսում ես Գագոյի հետ»:

«Ի՞նչ է արել Գագոն քեզ»:

«Գագոն ինձ ոչինչ չի կարող անել, որովհետև ես կամքի ուժ ունեմ: Գագոն քեզ է փչացնում, որովհետև դու կամքի ուժ չունես: Իսկ Գագոն ցուցամոլ է, երես առած ու վատ է սովորում»...

Իսկապես որ՝ խե՜ղճ Գագո. երես առա՜ծ, ցուցամո՜լ, վատ սովորո՜ղ ու մարդկանց փչացնո՜ղ...

«Լա՜վ»,— մտածեց Գագոն ու որոշեց անակնկալի բերել կամքի ուժ ունեցող աղջկան:

Գագոն ոչ միայն կռահելու վարպետ էր, այլև՝ անակնկալի...



Օրերն անցնում էին: Աղջիկն ավելի հաճախակի էր սկսել խռովել, ու տղան ստիպված երդվեց, որ չի խոսի Գագոյի հետ: Բայց այս անգամ էլ դրժեց երդումը: Գագոյի հետ չխոսելը շատ դժվար բան էր նրա համար, քանի որ Գագոն դասարանի ամենասիրված հերոսն էր, և միայն մեծ կամքի ուժ ունեցողը կարող էր Գագոյի հետ չխոսել: Տղան վերջերս լրիվ ընկավ Գագոյի ազդեցության տակ ու սկսել էր նրա հետ միասին ծխել. դասամիջոցներին մտնում էին զուգարան, ծուխը ներս էին քաշում ու դուրս փչում՝ իսկական հասուն տղամարդկանց նման: Աղջիկն իմացել էր այդ մասին ու դարձյալ չէր խոսում տղայի հետ:

Տղան գրեց թղթի վրա.

«Էլի խռո՞վ ես հետս»:

Աղջիկը չպատասխանեց. Միայն հայացքով ասաց «այո», հետո հայացքը հառեց գրատախտակին:

Տղան նորից գրեց.

«Միայն գրիր, թե ինչու՞ խռով»:

Աղջիկը գրեց.

«Որ լրիվ ընկել ես Գագոյի ազդեցության տակ ու ծխում ես»:

Տղան կամացուկ ասաց.

— Ես չեմ ծխում:

— Դե երդվի՛ր:

Տղան ուզում էր երդվել, բայց չերդվեց: Եվ աղջիկն ուրախացավ, որ տղան չերդվեց...

— Ո՞վ է քեզ ասել,— հարցրեց տղան:

— Քո սիրելի Գագո՜ն,— ծիծաղ տվեց աղջիկն ու ոտքից գլուխ չափեց տղային իր խոր հայացքով:

Մինչդեռ տղայի հայացքն, ինչպես միշտ, աղերսական էր ու հուսահատ. «Գագո՞ն: Ա՛յ, թե ինչպիսին է Գագոն: Ինքը ասում է՝ ոչ ոքի չասես, ու ինքն է ասում: Իսկի կամքի ուժ չունի: Ես էլ մի քիչ ունեմ»...

— Էլ չեմ ծխի,— խոստացավ տղան:

— Չեմ հավատում քեզ,— ասաց աղջիկը:

— Հավատա՛:

— Երդվի՛ր:

— Երդվում եմ:

— Ինչո՞վ:

Տղան երդվեց ամեն ինչով, ու նրանք այդ մի անգամն էլ հաշտվեցին:

Եվ դասերից հետո տղան դարձյալ ուղեկցում էր աղջկան: Երբ տուն հասան, աղջիկը շուռ եկավ ու գլխով արեց տղային, որ մոտենա իրեն: Տղան մոտեցավ:

Աղջիկն ասաց.

— Եթե նորից ծխես, էլ հետդ երբեք չեմ խոսի, իմացա՞ր:

— Իմացա,— ասաց տղան:

— Հիշո՞ւմ ես, թե ինչ երդումներ ես տվել դասարանում:

— Հիշում եմ,— ասաց տղան:

— Ես գնում եմ,— ասաց աղջիկը:

— Գնա՜,— հառաչեց տղան:

Աղջկա հեռանալուց հետո, նա նորից հառաչեց, որովհետև հանկարծ զգաց, որ ծխել է ուզում, այնպե՜ս էր ծխել ուզում: Բայց նա հավատում էր աղջըկա խոսքերին ու վախենում էր, որ աղջիկն իրոք այլևս չի խոսի իր հետ: Տղան զսպեց իրեն ու ինքն էլ գնաց տուն:



Հաջորդ առավոտյան, երբ զանգը հնչեց ու նրանք նորից նստեցին իրար կողքի, աղջիկը կամացուկ հարցրեց տղային.

— Ճիշտ ասա, ծխե՞լ ես:

— Չէ՛,— կմկմաց տղան և խսկույն գունատվեց:

Իսկ աղջիկը շիկնեց պայրույթից, և ռունգերը նորից սկսեցին թրթռալ, որովհետև լավ գիտեր, թե տղան երբ էր գունատվում.

— Դե երդվի՛ր:

— ...Ինչո՞վ:

— ...Ամենաթանկ բանով:

— ...Երդվում եմ:

Աղջկա հայացքը ավելի խստացավ.

— Ինչո՞վ ես երդվում:

Տղան ուզում էր բանավոր ասել, բայց չկարողացավ ու դարձյալ գրեց թղթի վրա.

«Քո արևով»:

Աղջիկն ուղղակի ծռմռեց դեմքը. որովհետև այնպե՜ս էր հիասթափվել տղայից, ու աչքից կայծեր էին ցայտում...

Դուռը բացվեց, դասղեկը մտավ ներս, ու դասարանում խսկույն լռություն տիրեց. որովհետև դասղեկի հայացքն էլ աղջկա հայացքի նման խիստ էր և նրա աչքերից էլ կայծեր էին ցայտում:

... Հետո ուսուցչուհին սկսեց գրել գրատախտակի վրա, իսկ տղան՝ թղթի կտորի: Բայց աղջիկը չկարդաց նրա գրածը, այլ միայն գրատախտակի վրայի գրածն էր կարդում:

Տղան լրիվ հուսահատվել էր ու մի անգամ էլ գրեց.

«Էլ չեմ ծխի»:

Բայց աղջիկն արդեն ոչ միայն չէր հավատում տղային, այլև չէր էլ ուզում կարդալ նրա գրածը:

Տղան ստիպված հայացքով ասաց.

«Երդվո՞ւմ եմ»...

Աղջիկը կարծես զգաց, որ տղան նորից երդվում էր. խայթվածի նման շուռ եկավ ու այնպե՜ս նայեց տղային.

«Դու իմ արևով էլ ես սուտ երդվո՞ւմ...»

Եվ հանկարծ լռության միջից նրանք լսեցին դասղեկի զայրացած ու այնքա՜ն լուրջ ձայնը.

— Այդ ի՞նչ հայացքներով եք նայում իրար:

Նրանք երկուսն էլ այնպե՜ս շփոթվեցին: Դասարանը ապշեց: Իսկ Գագոն բարձրացրեց ձեռքը.

— Ուզո՞ւմ եք, ես ասեմ:

— Ասա՛,— սրտնեղեց ուսուցչուհին:

— ...Ամեն ինչ պարզ է...

— Ի՞նչն է պարզ:

— Ը՜... նրանք իրար նայում են... ը՜... փոխադարձ սիրո հայացքներով:

Տղան գունատվեց: Աղջկա ռունգերը թրթռացին: Ուսուցչուհին ցնցվեց. նա զայրացած էր, շատ էր զայրացած Գագոյի վրա:

— Դո՛ւրս:

— Ինչու՞,— զարմանքի արտահայտություն ընտրեց Գագոն:

— Դո՛ւրս գնա:

— Բայց ի՞նչ եմ արել:

— Ասացի, դո՛ւրս գնա դասարանից:

Եվ Գագոն դասարանից դուրս գնաց, բայց այնպիսի հաղթական քայլվածքով, որ կարծես սահուն վայրէջք էր կատարել Վեներայի վրա, ուսումնասիրել էր մոլորակի բոլոր գաղտնիքները ու հենց նո՜ր իջել էր Երկիր:

...Եվ ռունգերն էլ թրթռում էին...

# ԱՍՏՂԵՐ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱՐԱՅԱՆ

— Իմ լա՛վ տղա, այսպես անքուն,
Ի՞նչ ես փնտրում դու երկնքում:
— Ես փնտրում եմ անհայտ աստղեր,
Հեռու աստղեր,
Սուտակ աստղեր:

— Իմ լա՛վ տղա, սիրո՛ւն տղա,
Ինչի՞դ են պետք, դու ինձ ասա՛,
Անհայտ աստղեր,
Հեռու աստղեր,
Սուտակ աստղեր:

— Ես ուզում եմ աստղեր գրկել,
Աստղեր երգել, աստղեր ցանել
Սարին, քարին,
Թիկնած ժայռին,
Մարդկանց հեռու ճանապարհին:

ՆԿ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



# ԿՈՄԻՏԱՍ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

1881 թվականին Փոքր Ասիայի Բուրսա քաղաքի եկեղեցական թեմի առաջնորդ Գևորգ վարդապետ Դերձակյանը սայլով գնում էր Էջմիածին եպիսկոպոս ձեռնադրվելու: Դրանից քիչ ժամանակ առաջ նա ըստացել էր Գևորգ Դ կաթողիկոսի մի գրությունը, որի մեջ նա ապսպրում էր. «Բեր քեզ հետ վարժարանի մի ձայնեղ աշակերտի ճեմարանում ուսանելու...» Մրցույթին քսան աշակերտներից լավագույն էր ճանաչվել Սողոմոն անունով մի որբ պատանի: Բարձրահասակ, նրբակազմ, խորաթափանց-խոհուն հայացքով այդ տղան վարդապետին զարմացնում էր վաղ խելահասությամբ և, մանավանդ ձայն ու եղանակ ընկալելու ու

վերարտադրելու զարմանալի ունակությամբ։ Հայերեն չգիտեր Սողոմոնը, միայն թուրքերեն էր խոսում, քանի որ ծնողները միայն թրքախոս էին եղել։

Մի քանի օր հետո հասան Արարատյան աշխարհը։ Նրանց դեմ բացվեց սքանչելի տեսարան։ Մի կողմում Արագածն էր, լայնանիստ, սուր կատարներին կապտին տվող ձյուն, տարածուն լանջերը բազմաթիվ ձորակներով հատված և այստեղ-այնտեղ գյուղակներ՝ հին եկեղեցիներով, կանաչ այգիներով և կապտավուն, կապտավուն մշուշով շղարշված։ Մյուս կողմում Արարատն էր, երկնքի մեջ անշարժ, ամպերից վեր գագաթը բարձրացրած, վեհանիստ։ Թվում էր, բնությունն այդ լեռը ստեղծելիս ընտրել էր ամենավեհափառ ձևերը և, դիտավորյալ, ձյունոտ գագաթները տեղադրել էր այնքան բարձր, անհասանելի։ Եվ խաղաղ հարթավայրի վրա բարդիների վշշոցը, և խաղողի մուգ այգիների մոտ առուների հանդարտ փայլերը, և արտույտի ծլվլոցը առավոտյան կապույտ երկնքում, Սողոմոնին թըվացին դեռ ամենահին ժամանակներից ծանոթ։ «Դու հիանո՞ւմ ես»,— հարցրեց վարդապետը։ «Ո՛չ, տե՛ր հայր,— ասաց Սողոմոնը,— հիմա ես զգում եմ, որ այս ամենը իմ հոգու մեջ կար դեռ հեթանոս ժամանակներից էլ առաջ։ Հիմա ես զգում եմ իմ հայ լինելը»։

Էջմիածինը հին վանքերով, այգիներով, հողի գիշերային բույրով դարձավ Սողոմոնի հոգեկան վերափոխման վայրը։ Ճեմարանում Ղևոնդ վարդապետ Մարարյանը եղավ երաժշտության նրա առաջին ուսուցիչը և նրան վարժեցրեց հայկական նոտագրության։ Ամեն օր, ճեմարանի սաները մայր եկեղեցում երգում էին հին հոգևոր երգեր։ Սողոմոնին դուր չէին գալիս այդ երգերը։ Դրանք ինչ-որ ներդաշնակ չէին լուսնյակ գիշերներին Արագածի արծաթ ձյուներից եկող պաղ քամիների տակ բարդիների խշշոցին, մթնած ու լուռ այգիների արբեցնող բույրին և առուներում ջրերի հանդարտիկ ու ծույլ փայլփլումներին։ Դրանք ներդաշնակ չէին հայկական այն նախազգացումին, որ կար նրա մեջ, հարյուրավոր տարիների ընթացքում այդ մեղեդիներին խառնվել էին պարսկական, արաբական, թուրքական և այլ օտար հնչյուններ, օտար պատկերներ ու զգացումներ։

Եվ նա հանգիստ չուներ։ Թափառում էր եկեղեցիների շուրջը, զննում էր հին զարդաքանդակները, տաճարների զուսպ, նպատակասլաց ձևերը, ջանալով դրանց մեջ ճանաչել իր հոգուն հարազատը. քարը անաղարտ պահպանել, արհավիրքների միջից նոր ժամանակներին էր հասցրել հայի համար հարազատ, զուտ հայկական ձևերը։ Հռիփսիմեի տաճարը Արարատի հաստատուն նստվածքն ու բարձր վեհափառությունըն ուներ։ Բայց երգերը, մեղեդիները բերանից-բերան անցնելով՝ աղճատվել, այլակերպվել էին։ Ո՞ւր փնտրել դրանց նախատիպերը, որտեղի՞ց ճարել ամենախնկականները։ Գիշերները նա չի քնում, բաց լուսամուտի առջև ժամերով նստած, ունկնդրում է բնաշխարհի ձայները. անուշ վշշում են ծառերը, հեռվից գալիս է



քնաթաթախ շան ծույլ հաչոցը: Ինչ-որ տեղ կանչում է աքաղաղը: Քարաշեն ցածր խրճիթների սև երդիկները ննջում են խաղաղ: Շինականը նախորդ օրվա աշխատանքից դադրած, քաղցր քնում է բարի երազի մեջ: Նա ունկնդրում էր բոլոր այն ձայները, որոնք կարող էին նախանյութ հանդիսանալ հայ մարդու հոգեկան ապրումների հնչյունային արտահայտման: Նա մտածում էր. «Այդ բոլոր հնչյունները ինձ ծանոթ են. այդ բոլոր հնչյունները իմ մեջ կային: Ես հայ եմ»: Մի օր նա ասաց իր ճեմարանական ընկերոջը. «Ես գտա, թե որտեղ պետք է փնտրել իսկական հայկական երգը, այդ երգի ակունքների մոտ՝ հայ շինականի, գեղջուկի, աշխատավորի մոտ»: Դրանից հետո նա երեկոները փախչում էր ճեմարանից, ոտքով հասնում էր մոտակա գյուղերը, թափառում էր դաշտերում, ներկա էր լինում ժողովրդական ծիսակատարությունների, ամենուր նա փնտրում, հավաքում էր ժողովրդի երգած երգերը, նվագած եղանակները: Հետո երկար ժամեր իր խցում փակված մշակում էր դրանք, դուրս գցելով դրանցից օտարաբեր տարրերը, ներդաշնակելով հայկականի իր զգացմանը, թողնելով միայն զուտ հայկականը: Այսպես նա նորեն ստեղծագործում էր վաղուց կորած անհետացածը, վերագտնում էր իսկական հայ երգերը, և դրանցից յուրաքանչյուրը արվեստի գլուխ-գործոց էր:

1890-ին Սողոմոնը ավարտում է ճեմարանը: Հետո՝ 1893-ին Խրիմյան կաթողիկոսի կողմից ձեռնադրվում է վարդապետ՝ Կոմիտաս անվամբ: Այնուհետև՝ Գերմանիա, Բեռլին: Հեռավոր Հայաստանից եկած վարդապետը հետևում է հայտնի երաժշտագետ պրոֆեսոր Ռիխարդ Շմիդտի մասնավոր դասերին, հաճախում է արքունի համալսարանի երաժշտա-փիլիսոփայական դասընթացները: Մնացած ամբողջ ժամանակը նվիրում է իր հետ տարած հարյուրավոր ժողովրդական երգերի մշակմանը ու ներդաշնակմանը: Եվ չորս տարի հետո՝ նորից Էջմիածինը՝ հնագույն վանքով, խաղողի մուգ այգիներով: Կոմիտասը ճեմարանի երաժշտության ուսուցիչն է, վանքի երգեցիկ խմբի ղեկավարը: Մի հին, արևոտ բնակարան, փոքրիկ պարտեզ, որի տանձենու տակ նա հաճախ սիրում էր նստել և աշխատել: Չորս հազարից անցել էր նրա հավաքած և ձայնագրած երգերի քանակը: Այստեղ, փոքրիկ պարտեզով տանը, մի օր նրան հյուր եկավ նրա ճեմարանական ընկերը, մեծ բանաստեղծ Ավետիք Իսահակյանը: Մի գեղեցիկ օր էր: Նստեցին պարտեզում, տանձենու տակ, և Կոմիտասը երգեց: Մի հին երգ էր, շատ հին երգ: Երգեց ոգևորված, սրտաբուխ: Եվ ասաց. «Այս երգը հին է, հեթանոսական դարից, տես, թե ինչ միաձույլ են խոսքերն ու եղանակը: Բարձր լեռներից, շառաչուն ջրվեժներից, խոժոռ ժայռերից է սկիզբ առել. մեր քաջ նահապետների հոգուց է բխել...» Եվ աչքերը արցունքից փայլում էին:

Այժմ նա ուներ անաղարտ, բյուրեղացած հայկական երգեր: Այժմ նա կարող էր դրանք պարզել քաղաքակիրթ աշխարհին և ասել. «Ահա՛, մարդի՛կ, իսկական հայ երգը, իսկական հայ հոգին և հայ աշխարհը»: Եվ նա հայ երգով գնաց քաղաքակրթությանը ընդառաջ: Նրան լսեցին Բեռլինը, Փարիզը, Վիեննան, Լոնդոնը և զարգացած մշակույթի այլ խոշոր կենտրոններ: Ամենուր նա երգով պատմում էր. կա դեռ Բաբելոնի ժամանակներից եկող մի ուրույն ժողովուրդ,



կա մի հնամենի հրաշալի երկիր: Պատմում էր Արագածի լուսնյակ գիշերների կապույտ թովչանքի, Արարատի գոռ վեհության, բարդիների անուշ վշշոցի և հայի հոգու նրբության մասին: Եվ Կոմիտասի միջոցով եվրոպական քաղաքակրթությունը իր համար



հայտնագործեց մի նոր ապշեցուցիչ աշխարհ՝ Հայաստանը, հայ ոգին: Շրջագայությունները հետևում են մեկը մյուսին, ամեն անգամ բերելով թե՛ իրեն և թե՛ հայ երգին նոր փառք ու նոր ճանաչում: Ապա 1910-ին՝ Պոլիս: Այստեղ՝ Բանկալթիի Շիտակ փողոցի վրա նրա երկհարկանի տունը, ուր նա ապրում էր նշանավոր նկարիչ Փանոս Թերլեմեզյանի հետ, որը մինչև վերջ էլ մնաց նրա ամենամտերիմ բարեկամներից մեկը,— այդ տունը Պոլսում դառնում է հայ մշակույթի կենտրոն: Այստեղ հաճախ կարելի էր տեսնել հավաքված նրա բարեկամներին՝ Իսահակյան, Վարուժան, Սիամանթո, Թաղևոսյան, Սևակ և ուրիշներ: Պոլիս գալով, նա երեք նպատակ ուներ. պոլսահայությանը ծանոթացնել հայկական երաժշտությանը, ստեղծել խոշոր երգչախումբ և հիմնել հայկական առաջին կոնսերվատորիան: Երգչախումբը ստեղծեց՝ 300 մարդուց բաղկացած: Պոլիսը և դեռ Մերձավոր Արևելքը հիացմունքով ունկնդրեց հայ երգին: Կոնսերվատորիա չհաջողվեց ստեղծել. այն ժամանակվա թուրք կառավարությունը չէր ուզում, որ Պոլսում ստեղծվող առաջին կոնսերվատորիան լիներ հայկական: Պոլիսը դեռ մի անգամ ևս ցնծությամբ դիմավորեց Փարիզի միջազգային երաժշտական համագումարից վերադարձող Կոմիտասին, ուր նրա ելույթը եղավ նշանավոր իրադարձություն և մտավ երաժշտության պատմության մեջ որպես աննախադեպ երաժշտական հաղթություն: Եվ Պոլիսը նրան դիմավորեց որպես տրիումֆատորի, տարավ ձեռքերի վրա: Պոլիսը դեռ բազմիցս լսեց նրա աննման ձայնը և ծափահարեց ապշած: Մինչև 1915-ի գարունը: Սև գարուն բացվեց: Հայկական կոտորածի, սպանդների տեսարանները ցնցեցին աքսոր քշված մեծ արվեստագետին: Աքսորից նա վերադարձավ՝ հայացքում մահվան պաղած սարսուռ: Բարեկամները նրան չէին ճանաչում, և բարեկամների աչքերի առջև, հոգեկան աննկարագրելի հուզմունքներ ապրած այդ հանճարեղ մարդը խելագարվում էր: Տեղավորեցին Պոլսի Շիշլի արվարձանի ֆրանսիական հիվանդանոցում: Այստեղից 1919-ին նրան տեղափոխում են Փարիզ՝ նախ Վիլ-Էվրարի և ապա Վիլ-Ժուիֆի հոգեբուժարանները, ուր բժիշկները գտնում են. մեծ կոմպոզիտորի հիվանդությունը անբուժելի է, և նա դատապարտված է երկար տարիներ, մարդկանցից մեկուսացված սպասելու մահվան: Գիտակցության վերադարձի հազվադեպ րոպեներին նա ճանաչում էր այցի եկած հին բարեկամներին և ապա քաշվում սենյակի մի անկյունը, չուզենալով տեսնել ոչ մեկին: Մահը եկավ միայն 1935-ին, հոկտեմբերյան մի առավոտ:

Աճյունը բերվեց Երևան, թաղվեց՝ նրա անունը կրող այգու մի հեռավոր անկյունում ուր նրա կողքին, մի փոքրիկ հողակտորի վրա հանգչում են հայ մշակույթի մեծերը: Այստեղ նրանց այցի են գալիս ամենատարբեր մարդիկ, պիոներները թարմ ծաղիկներ են դնում նրանց գերեզմաններին: Նրա շիրմաքարը պարզ է, անպաճույճ, և նրա մոտ կանգնած այցելուն մտածում է. «Այս Մեծը մարդկության մշակույթին վերադարձրեց նրա ամենաթանկ մարգարիտներից մեկը՝ իսկական հայ երգը»:

# ՄԱԶԱԹԱՓ ԳԱՄՓՌԸ ԵՎ ԱՇՈՒՆԸ

ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Դուրս գալուց առաջ հայրն ասել էր.

— Կարո՛, չմոռանաս կաշվե բաճկոնդ հագնել, եղանակն անձրևային է։

Մայրը նույնպես, նախքան աշխատանքի գնալը, զգուշացրել էր.

— Բաճկոնդ անպայման կհագնես, թե չէ թրջված հավ ես դառնալու։

Եվ հիմա Կարոն քայլում էր՝ պայուսակը ճոճելով, իսկ անձրևն ուշանում էր համառորեն։ «Կարող է բոլորովին չգալ,— մտածում էր Կարոն,— կարող է չըգալ, իսկ այս բաճկոնակով շոգ է»։ Հոր աշխատավայրից ինչ-որ յուղաներկեր պետք է բերեր, որովհետև իրենց տան դուռն ու պատուհանների շրջանակները միանգամայն խունացել էին և հարկավոր էր թարմացնել։ «Հիանալի բան կլինի, եթե ես էլ ներկեմ,— մտածում էր Կարոն,— ամենագեղեցիկ պահը հասնում է այն ժամանակ, երբ յուղաներկը թանձր շերտով քսվում է փայտին և նոր հետքերի ու նոր խազերի համար տարածություն բացում»։ Նա քայլում էր, իսկ ծառերից լռակյաց տերևներ էին թափվում և մնում մայթերի վրա։ Աշուն էր։

Դուրս գալուց առաջ հայրն ասել էր.

— Կարո՛, աշխատիր մինչև ընդմիջումը գալ, թե չէ մյուս ժամերին ես պետք է տեղամասերում շըրջեմ։

Մայրը նույնպես, նախքան աշխատանքի գնալը, զգուշացրել էր.

— Ամեն անգամվա պես ժամերով մի՛ կանգնիր ցուցափեղկերի առաջ կամ էլ շների ետևից մի՛ ընկիր, որ չուշանաս։

Եվ հիմա Կարոն գնում էր՝ առանց չորս կողմը նայելու, իսկ երկինքն ամբողջովին պատվել էր ամպերով, կարծես մրսում էր կամ էլ մարդկանցից թաքցնում ինչ-որ հիանալի, ինչ-որ խորհրդավոր, բայց վճռական գաղտնիք, որ կարող էր զենք դառնալ աշուն հաղթահարելու կամ անձրևներին շուտափույթ գալուստներ գուշակելու համար։ «Այո, իզուր անձրև չի սկսվում,— մտածում էր Կարոն,— իզուր, ապա թե ոչ, ես կվազեի և տեղ կհասնեի բավականին շուտ»։ Նրա տրամադրության տակ մի ամբողջ ժամ կար, բայց նա ցանկանում էր կարճ ժամանակում հանձնարարությունը կատարել, որպեսզի հետո մի քիչ ման գա փողոցներում։ «Հիանալի բան է փողոցներում զբոսնելը,— մտածում էր նա։— Ավելի լավ բան չկա, քան դիպչել անընդհատ շտապող անցորդներին և խանգարել նրանց»։ Նա քայլում էր, իսկ ճյուղերից, դեղին նշանագրերի պես վար էին գալիս տերևները և աշնան անհասկանալի խոսքերը թողնում մայթերի վրա։ «Զբոսայգուց հետո լճակն է,— մտածեց նա,— հետո թատրոնի շենքը, հետո մի քիչ էլ պետք է գնալ, և տեղում կլինես»։

Գամփռը ծառուղուց դուրս եկավ, անցավ ճաղերի լայն արանքով և հայտնվեց մայթին։ Սկզբում Կարոն չնկատեց նրան, բայց հետո տեսավ ու կանգնեց տեղում։

(...աշխատիր մինչև ընդմիջումը գալ...)

Ավելի թշվառ շուն տղան չէր տեսել։

(...շների ետևից մի՛ ընկնիր, որ չուշանաս...)

Գամփռի ամբողջ կերպարանքն արտահայտում էր մենակություն ու թախիծ։ Կարոն ուշադրությամբ նայեց նրան ու խոսեց.

— Ես պետք է գնամ,— ասաց նա։

Գամփռը նույնպես նրան էր զննում։

— Դու շատ մենակ ես, բայց ինձ սպասում են,— փորձեց այսկերպ հասկացնել Կարոն։

Շունը ձայն չէր հանում, ըստ երևույթին շատ երկար էր ապրել այս աշխարհում և սովորել էր լռել։



— Կորի՛ր,— ըսպառնաց Կարոն։

Ոչ մի շարժում։ Տերևները շարունակում էին ընկնել, ինչպես իզուր արտասանված բառեր։ Ամպերը եկել էին ու քողարկել երկնակամարը, շենքերի տանիքները սեղմվել էին, և շանն անհրաժեշտ էր փրկվել աշունից։

Կարոն պայուսակը գետին դրեց։

— Ես գնում եմ ներկեր բերելու,— փաղաքուշ ձայնով բացատրեց նա,— հայրս ինձ է սպասում։

Շանը չէր սպասում ոչ ոք, այդ պատճառով էլ նա չհասկացավ։

— Ուր որ է անձրև կսկսվի,— հիշեցրեց Կարոն,— գնա՛ և մտիր մի ապահով տեղ, թե չէ դառնալու ես թրջված հավ։

Շան աչքերը նման էին երկու մեծ, չորացած տերևների. թվում էր, թե հիմա պետք է ընկնեն, որ աշունը կատարյալ դառնա։ Կարոն ճարահատյալ վերցրեց պայուսակն ու գնաց։ Գամփռը ճանապարհ

տվեց նրան։ Կարոն շարունակեց քայլել և այդ ամբողջ ժամանակամիջոցում իրեն հարկադրում էր ետ չնայել։ Իսկ շունը գալիս էր նրա ետևից, տղան գիտեր այդ։ «Հանկարծ չկծի»,— անհանգստացավ նա, բայց իսկույն էլ եզրակացրեց, որ այդպիսի բան հնարավոր չէ։ «Նա շատ ծեր է,— մտքում ժպտաց Կարոն,— գրեթե մանուկ, այնպես որ չի գազազի»։

— Լսի՛ր,— ասաց նա՝ միանգամից շրջվելով,— դու քանի՞ տարեկան ես։

Եվ տեղնուտեղը պատասխանեց շան փոխարեն. «Մոտավորապես հարյուր»։

— Չէ,— խորամանկ ժպիտով մատ թափ տվեց Կարոն,— շներն այդքան չեն ապրում։ Դու մի քսան տարեկան կաս։

«Ճիշտ գուշակեցիր»,— վրա բերեց մտքում։

— Բա ձմռանն ինչպե՞ս ես դիմանալու,— հետաքրքրվեց նա,— ախր մազերդ գրեթե թափվել են։

«Մինչև ձմեռ դեռ շատ կա, կմտածենք»։

Կարոն մի անգամ էլ զննեց շանը։ Մոխրադարչնագույն։ Մազաթափ։ Բոլորն ասում են, թե աշունը դեղին է, բայց ինքն այսօրվանից հակառակը կարող է ապացուցել։ Մոխրադարչնագույն է և վերջ։ Շունը նստեց։ Կարոյին թվաց, թե այդ արարածը եկել է հեռվից, երկնքի ինչ-որ անկյունից կամ ընդերկրյա կածաններից, ամպերի տակ թաքնված գաղտնիքների պատգամաբերն է կամ անձրևի սպասող սերմերի ձայնը, իր հետ փափուկ արձագանքներ է բերել և խելացի լռություն։

— Այն, ինչի համար ապրում ես, ինձ շատ սիրելի է,— ասաց Կարոն,— բայց ինձ ետ ես պահում։

Նա չզարմացավ, երբ իր խոսքերն անպատասխան մնացին։

— Քո գործն է,— ասաց Կարոն,— արի ինձ հետ, եթե ցանկանում ես։

Ջրոսայգուց այն կողմ արհեստական լճակն էր, հետո թատրոնի շենքը, հետո հարկավոր է մի քիչ էլ գնալ, և տեղում կլինես։ Իսկ եթե ինքը զբաղվի շան հետ ու չգնա՞։ Հայրիկն, իհարկե կարող է զայրանալ։ Նրան հնարավոր չէ պատմել, թե ինչպիսի տերևներ էին շան աչքերը։

— Ի՞նչ ես դու մտածում աշնան մասին։

«Մի կերպ դիմանալ կարելի է, բայց միայն աշնանն ես զգում, որ մի տարով էլ մեծացար»։

Կարոն դանդաղ էր քայլում, որ գամփռը չհոգնի։

(...աշխատիր մինչև ընդմիջումը գալ...)

Հո չէ՞ր կարող նրան մենակ թողնել։

(...շների ետևից մի՛ ընկնիր...)

Ոչինչ անել չես կարող, այս անգամ շունն էր տղայի ետևից գնում։

— Ավա՜ղ, քո պատճառով իմ ճաշը կեփեն,— գլուխն օրորեց Կարոն։

«Միայնակներին պետք է ներել»,— ասում էր գամփռի հայացքը, և նույն բանը Կարոն իրեն էր ասում։

— Մենք մի շուն ունեինք,— սկսեց պատմել տղան,— անունը՝ Ժոլի։ Ես կարծում եմ, որ նրա համար ավելի հեշտ է ապրելը։— Հետո ավելացրեց.— «Ժոլի» ֆրանսերեն բառ է, նշանակում է՝ «գեղեցիկ»։

Շունը համբերությամբ լսում էր։ Պարզ է, որ նա գտել էր զրուցակցին, գտել էր նրան, ով պատրաստ



էր նրա հետ զգալու աշունը, տերևների դեղինը ու մռայլ կեսօրը։ Նա լսում էր, և աչքերի մեջ նկատելի էին դառնում գոհունակություն ու երկյուղ։

— Գուցե դու մինչև այժմ անուն չե՞ս ունեցել,— հանկարծ բացականչեց Կարոն,— կամ գուցե վաղուց ես կորցրել այն։ Վատ է։ Եթե անուն չունես, ուրեմն չես ունեցել նաև իսկական բարեկամ, եթե անուն չունես, նշանակում է մենակ ես մնացել աշնան հետ։

Գամփռը գլուխը կախեց։

— Բայց, ով գիտե... Շարի՛կ,—կանչեց Կարոն,— Ջալո՛, Բողա՛ր, Ջե՛կ, Տուզի՛կ...

Շունն անհաղորդ մնաց բոլոր անուններին էլ։ Կարոյին թվաց, թե յուրաքանչյուր կանչի հետ նա ավելի է փոքրանում։

— Հիմա,— ասաց տղան,— քեզ անուն եմ դնելու։

Հենց այդ ժամանակ անձրևեց։ Առաջին կաթիլները ղմկեցին Կարոյի բաճկոնակի ուսերին, մայթի վրա։

— Պստի՜կ,— բացականչեց Կարոն,— քո անունը Պստիկ կլինի, որովհետև դու կարգին ծեր ես։

Եվ նա հպարտորեն նայեց գամփռին։ Նա տեսավ, թե ինչպես է աշունն իր ողջ ծանրությամբ ու թախիծով վայր գալիս նրա կողերից, տեսավ, թե ինչպես է շան մարմինը լցվում անձրևի խլրտոցով։

— Արի՛ ինձ հետ, Պստի՛կ,— ժպտաց Կարոն։

Հետո շարժվեց։ Անձրևը գալիս էր մեղմ, առանց ավելորդ շարաճճիությունների, բայց իր կախարդանքների նկատմամբ ունեցած հավատով։ Տերևները թափվում էին, իսկ Կարոն գնում էր, և նրա ետևից գնում էր գամփռը։

— Ո՛չ, Պստի՛կը,— ուղղեց Կարոն հեղինակին։

Պստիկը գնում էր, և ոչ մի մենություն սարսափելի չէր նրանց համար։

# ԼՌՈՒԹՅՈՒՆՆ' ԻՋԵԼ Է ԿՐԿԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Դատարկ է մեր հորի այգին,
Մնում է մի անմարդ տնակ...
Լռությունն իջել է կրկին,
Մենակ են լեռները, մենակ։
Տխրել են արահետ ու լանջ,
Եվ շաղն է մեղմորեն տեղում,
Աշխարհին քաղցրություն տված՝
Փեթակում քնել է մեղուն։
Մասրենին թեքվելով հողին՝
Իր բարը թափում է առվում,
Տերևի ծփանքով դեղին
Անտառի կարոտն է վառվում...
Ծերպերին նստել է եղյամ,
Զնգում է աղբյուրը ձամփին,
Սարվորի միամիտ տղան
Գլխարկն է մոռացել ափին։
Վազում է մի ուրախ եղնիկ
Ձորերի մշուշոտ հեռվում,
Տերևի ծփանքով մեղմիկ
Անտառի կարոտն է վառվում։

Նկ. ՄԻՔԱՅԵԼ ԳԻՋԳԻՋՅԱՆԻ

# ՀՆԱՐԱՄԻՏ

ՎԵՍՊԵՐ

Մեր գյուղը, իմ աչքի չափով, պստիկ չէր. ինչքան չլիներ՝ հարյուր տանից ավելի կլիներ։ Ուզու՞մ եք անունն էլ տամ՝ Խորգոմ էր։

Հիշում եմ, մի անգամ պապս ինձ հարցրեց.

— Հավա՞ն ես մեր գեղին։

— Հա՛, պապի՛կ ջան,— պատասխանեցի ժպտալով։

Իհարկե, նման չէր Խորգոմը մեր այս օրերի բարեկարգ և գեղեցիկ գյուղերին. տնակները հողաշեն էին այնտեղ ընդհանրապես, պարզ ու հասարակ։ Գյուղում մի դարբնոց կար միայն, մեկ էլ՝ մանրավաճառի մի խղճուկ խանութ։

Սակայն իմ աչքին քաղցր էր այն ժամանակ Խորգոմը. չէ՞ որ այնտեղ էի բացել ես աչքերս, տեսել ծնողներիս, մանկության ընկերներին, սար ու ձոր... իմ աշխարհն էր դա։

Գյուղի փոքրիկ, քարաշար պատերով վարժարանում, ձմռան ամիսներին քիչ թե շատ ուսում առա նաև ես՝ մեր բարի Սահակ վարժապետի շնորհիվ։ Իսկ ի՞նչ էի անում տարվա մյուս եղանակներին. գնում էի հորս հետ գյուղի տավարն արածացնելու կանաչազարդ դաշտերում և զով սարալանջերին։ Ուրեմն հորս օգնականն էի ես՝ մի մատղաշ նախրապան։

Ամեն կիրակի ես ու նա մի-մի պարկ առած՝ շրջում էինք տնից-տուն, յուրաքանչյուր տավարատիրոջից նախրահաց ստանալու, իսկ նախրավարձը՝ մի քանի արծաթ փող, հավաքում էինք տարեվերջին։

Սակայն կար մեկը մեր գյուղում, որ հրաժարվում էր ոչ միայն նախրահացը տալուց, այլև տարեվերջի մի քանի արծաթ փողից։ Այդ մարդը մեր «պատվարժան» տեր-Երանոսն էր։

— Ինչի՞ չես տա մեր վարձը, ա՛յ տերտեր,— ասաց ի վերջո նեղացած հայրս,— չէ՞ որ աշխատում, հալալ քրտինք ենք թափում ես ու մատղաշ տղես. ամեն օր քո կովն ու հորթն էլ ենք արածացնում։

— Մեծ բան եք անում, հա՜,— ձեռները մեջքին կանգնած՝ պատասխանեց տեր-Երանոսը,— ես էլ ձեզ՝ ողջ գյուղին եմ ծառայում. պսակ, կնունք, թաղում, ժամ-պատարագ, տնօրհնեք...

— Հո ձրի չե՞ս անում։

— Շատ մի՛ երկարացնի, քո գործը չի. ես քեզ և էդ մատնաչափ տղիդ վարձ տալը համարում եմ ավելորդ...

— Լավ,— ասաց հայրս,— տեսնենք ո՞ր մածնից կլինի, թե՞ մածունը եղից:

— Սրա՞ն տես...— վրա բերեց տերտերը և, տոպրակի պես կախ ընկած զորշ մորուքը սրդողելով, տուն մտավ:



«Ինձ էլ կտեսնես»,— ասաց անվախ Նախրապանի հայրս մտքում և շուտով գործի անցավ:

Մի քանի օր հետո խորամանկ հայրս կեսգիշերին վեր կենալով՝ տեր-Երանոսից վաղ և մեզնից

# ՀԱՅՐՍ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

գաղտնի գնում է ժամ, մտնում խորանի ետև, սուսուփուս մնում է թաքնված:

Մեկ էլ լսում է, որ եկեղեցու ծանր դուռը ճռաց. ուրեմն տերտերը ներս մտավ, մտածում է նա, լսում է նաև, թե ինչպես փիլոնը վրան գցեց և կրծքի խոշոր կոճակը չխկացնելով՝ կոճկեց:

«Էս էլ լավ»,— ասում է ինքնիրեն հայրս և ականջները նապաստակի պես սրում դարձյալ:

«Հայր մեր, որ երկինս ես, սուրբ եղիցի անուն քո, եկեսցե արքայություն քո, եղիցի կամք քո...»— ասելով և երեսը խաչակնքելով՝ տեր-Երանոսը սկսում է առավոտյան ժամի արարողությունը: Ապա, ի վերջո, ինչպես հարկն է, նա եղանակավոր գլգլացնում է.

— Տեր, ողորմյա՛, տեր, ողորմյա՛...

Հանկարծ խորանի ետևից լսվում է մեկ ուրիշ ձայն.

— Չեմ ողորմա, չեմ ողորմա, Նախրապանի վարձը կկտրե՞ս, չե՛մ ողորմա:

Լսելով այս բանը՝ տերտերը զարզանդում է, դողն ընկնում է ջանը: Չար փորձանքից ազատվելու համար նա երեսը խաչակնքում է երեք անգամ, ապա սիրտ առնելով պատասխանում բարձրաձայն.

— Արարի՛չ ամենեցուն, ինչի՞ չես ողորմա...

— Անիրա՛վ, Նախրապանի արդար վարձը կկտրես, դրա համար էլ չեմ ողորմա,— ազդարարում է ձայնը:

Այստեղ, ինչպես ասում են, տեր-Երանոսը ահ ու սարսափից դիվահարվում է, վրայից հանում է փիլոնը, ոտքից՝ հողաթափերը և շտապ եկեղեցուց դուրս թռչում: Նախրապանի հայրս էլ՝ նրա ետևից: Ընտրելով այլ ուղղություն՝ գնում է նա արագ, ապա շրջվում և գալիս գլխավոր ճանապարհի մեջտեղը նստում:

Ժամի արարողությունը կիսատ թողած և սարսափահար տերտերը տեսնելով հորս՝ կեղծ ժպտում է և ասում.

— Օրհնա՛ծ, որտե՞ղ էիր, հո եկեղեցու չե՞ս գալիս:

— Չէ՛,— պատասխանում է հայրս,— սպասում եմ տեղս, որ գեղի տավարն առած գա և մեկտեղ հանդը տանենք առավոտյա հովին:

— Գիտե՞ս,— ասում է տեր-Երանոսը,— իրիկունս արի, որ քո վարձը ես էլ տամ, օրհնա՛ծ, չմոռանա՞ս, անպատճա՛ռ արի...

«Թե դու ազնիվ ես՝ ես էլ քո պոչն եմ»,— պատասխանում է հայրս մտքում և, ճրագավառուցից քիչ առաջ, գնում ու ստանում է վարձը:

Երբ ժպտալով տուն եկավ հայրս, մայրս հարցրեց.

— Ինչո՞ւ ժամանակին տուն չես գալիս, ա՛յ մարդ:

— Գնացել էի տեր-Երանոսի մոտ մեր վարձն ստանալու:

— Էդ ինչպե՞ս եղավ, որ «պատվարժան» տեր-Երանոսի սիրտը փափկեց և քո ու մինուճարիս քրտնավարձը տվեց:

— Պատմելը հեշտ է, կպատմեմ, հարհարս, դու ճրագի պատրույգի քիթը առ, սեղանը դիր, որ մի պատառ բան ուտենք:

Ընթրիքին, հորս պատմելու ընթացքում, երեքս էլ մեծ ախորժակով պանիր, դաղձ ու ոչխարի մածուն կերանք և մի կուշտ էլ ծիծաղեցինք, ուրախանալով նախրապանի հորս հնարամտության վրա:








*ՄԵՏԱՔՍԵ*

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

իրակի գյուղերից մեկում է ապրում Անթառամ տատիկը: Անթառամ տատիկի մառանը հայտնի է գյուղում: Այդ նախանձելի մառանում է ապրում Անթառամ տատիկի սիրելին՝ Անախասը: Անախասը մեծ ու փարթամ պոչ ունի, կանաչ, վառվռուն աչքեր և ամենակարևորը, որ նա շատ երգեցիկ է մլավում: Մկներին թեև դուր է գալիս նրա ձայնը, բայց նրանք ատում են Անախասին ու ձայնը լսելիս դողում են թույլ խոտերի պես...

Անախասին բոլորը սիրում են գյուղում: Գյուղի ոչ մի շուն դեռ չի հարձակվել նրա վրա: Նա արհամարհանքով է նայում այն կատուներին, որոնք գզգզված մազերով, լեղապատառ հազիվ են պրծնում շների ճանկերից: Անախասը միշտ էլ հպարտ քայլում է գյուղամիջով և մտածում, թե՝ կատուներն են մեղավոր, որ շները հարձակվում են նրանց վրա: Գյուղի բոլոր շները վախենում են նրանից: Ո՞վ կարող է Անախասի վրա հարձակվել՝ ոչ ոք: Եվ նրա հեղինակությունը գնալով կբարձրանար, եթե չպատահեր մի դեպք:

Աշնան մի լուսնյակ գիշեր Անթառամ տատիկենց տանը հարսանիք էր: Ամուսնանում էր Անթառամ տատիկի թոռը՝ Հովսեփը: Մի մուկ մտածելով, որ հարսանիքով զբաղված կլինի ոչ միայն տատիկը, այլև Անախասը, որոշեց մառան մտնել: Որոշեց ու գլուխը դուրս հանեց ծակից: Մառանում ոչ ոք չկար: Վերևից լսվում էր հարսանքավորների ուրախ ծափն ու ծիծաղը, իսկ ներքևում խաղաղ լռություն էր տիրում: Ինչ իմանար խեղճ մուկը, որ Անախասը սուտ քուն է տվել ցորենի պարկի վրա: Նա դուրս եկավ թաքստոցից: Ուրախությունից քիչ մնաց սիրտը պատռվեր, երբ տեսավ ցորենի լի պարկը:



«Թող հարսանքավորները ծափ զարկեն, իսկ ես մինչև լույս պարկի մի անկյունը կդատարկեմ...» — որոշեց մուկն ու գործի դրեց դանակի պես սուր ատամները:

Անախասը շունչը պահած պարկի վրայից հետևում էր մկան ամեն մի շարժումին: Սիրտը խփում էր: Մուկն ահա պարկի վրա մի անցք բացեց, ուրախությունից ծվծվաց, պոչը ձգեց: Շարունակեց եռանդով կտրտել պարկի թելերը: Անախասը էլ չհամբերեց: Հո՛պ, ու բռնեց պոչից:

— Ավազա՛կ,— ծղրտաց Անախասը:

— Դու ճիշտ ես,— խեղճացավ մուկը:

— Ինչպե՞ս ես համարձակվում իմ մառանից գողություն անել: Հիմա ես քեզ պատառ-պատառ կանեմ:

— Անախա՛ս թագուհի, այս անգամ ների՛ր: Ես ինձ համար չէի տանում, քրոջս հիվանդ որդիների համար եկա: Մտածեցի, որ ցորեն տանեմ ուտեն, կլավանան: Այնպես էին լալիս, սիրտս կոտրվեց, ես էլ եկա... Այս անգամ ների՛ր...

— Ձեր արհեստը գողությունն է: Սրա համարձակությանը մի տես, է՜... Ինձնից գյուղի շներն են վախենում, սա իր մուկ տեղով չի վախեցել, մտել է մառանս...

— Միշտ էլ վախեցել եմ, Անախա՛ս թագուհի, բայց քրոջս հիվանդ որդիները... Ազնի՜վ խոսք... Այլևս քո մառանը չեմ մտնի:

Եվ մուկն սկսեց լաց լինել, թաթով սրբել արյունոտած քիթը, աղաչել, որ Անախաս թագուհին բաց թողնի իրեն:

— Անունդ ի՞նչ է...

— Մստո...

— Լսի՛ր, Մստո՛,— խոսեց Անախասը հեղինակավոր ձայնով,— կատուների աշխարհում մինչև օրս դեռ այդպիսի հրաշք չի պատահել, որ կատուն իր ձեռքն ընկած մկանն ազատ արձակի: Ես ուզում եմ քեզ հավատալ: Բաց եմ թողնում միայն մի պայմանով, որ մկների ցեղից ոչ մեկը չհամարձակվի մտնել այս մառանը, անկախ նրանից, ես այնտեղ կլինեմ թե ոչ, հասկացա՞ր:

— Էն էլ ո՜նց, Անախա՛ս թագուհի...

— Դե գնա՛,— ասաց Անախասն ու թաթը քաշեց Մստոյի մեջքից: Մստոն օրորվելով քայլեց, դանդաղ մոտեցավ ամբարի տակ գտնվող անցքին ու անհետացավ:

Հաջորդ օրը, երբ այս դեպքի մասին Անախասը պատմեց հարևան կատուներին, բոլորը ծիծաղեցին:

— Կատուն էլ մկանը հավատա՞,— քրքջում էին նրանք ու համոզում Անախասին, որ ճակատագրական սխալ է թույլ տվել:

Անցան ամիսներ:

# ՔԱՐԱՆՁԱՎԻ ԳԱՆՁԵՐԸ

այրս հնությունների ու բնության սիրահար մարդ էր:

Ընկերոջ հետ նրանք օրերով շրջում էին լեռներում, մտնում քարանձավները, նստում գեղատեսիլ աղբյուրների ու փարթամ ծառերի մոտ, թափառում թավուտ անտառներում: Վերադառնում էին տուն՝ թեից կախված տոպրակներում քարի փայլուն, երփներանգ կտորներ դրած կամ խունացած գրքերի պատառիկներ, իսկ երբեմն էլ՝ գույնզգույն փետուրներով հաստամարմին թռչուններ ու ձկներ:

Մի անգամ Թիֆլիսից մեր տունը եկավ սուր մորուքով, միջահասակ, լայնաճակատ, թափանցող աչքերով, ժպտուն դեմքով մի տղամարդ: Հորս ուրախությանը սահման չկար այդ մարդու գալու առթիվ:

— Վարժապե՛տ, այս անգամ քեզ համար հետաքրքիր բաներ եմ գտել, բայց շատ չարչարվեցինք քարանձավում ընկերոջս հետ,— ասաց հայրս:



Հյուրի աչքերը վառվում էին հետաքրքրությունից:

Հայրս սեղանին դրեց քարացած ձեռագրի մի մատյան: Թիֆլիսեցին սևեռուն նայում էր մատյանին: Նա ձեռքով զգուշորեն շոշափեց հնադարյան ձեռագիր գիրքը, որի թերթերը քարացել էին, ծայրերը մի քանի տեղերում փշրված, իսկ տառերը անընթեռնելի դարձել գունափոխության հետևանքով: Թղթատել անկարելի էր, որովհետև թերթերը փշրըվում էին:

— Ո՞ր քարանձավից եք դուրս բերել:

— Ջառնի,—կտրուկ պատասխանեց հայրս:

Տեսնելով թիֆլիսեցու հետաքրքրությունը՝ հայրս շարունակեց.

— Գառնի, Պնդոցի, Ծակի, Շերեկի և մյուս քարանձավներում չենք եղել: Էս գիրքը գտանք Ջառնի քարանձավում: Ի՜նչ քարանձավ: Մի բարձրադիր քարաժայռի մեջ ընկած հսկա քարան-

Այն օրվանից, ինչ Անախասը բաց էր թողել Մրստոյին, իրենց մառանում ոչ մի մկան չէր հանդիպել:

Ամառվա մի արևոտ օր էլ քաղաքից հյուրեր եկան Անթառամ մայրիկի տունը: Եկան, նստեցին ծառերի տակ դրված փայտե նստարանին, շոյեցին Անախասի գլուխը, գովեցին նրա գեղեցիկ աչքերն ու Բողարի կարճ պոչի վրա կուշտ ծիծաղեցին: Հետո նրանցից տարեցը կանչեց.

— Անթառա՛մ մայրիկ, նեղություն կրեք, մեկ-մեկ բաժակ թան տվեք խմենք, շոգ է:

— Վա՛յ, քոռանամ ես, բա ձեր ուզածն էլ թան է՞: Ա՛յ տղա, Հովսե՛փ, գնա մառանը, էն թանի կճուճը բեր, դիր էստեղ, ով ինչքան ուզում է, թող խմի:

Հովսեփը գնաց, կճուճը բերեց դրեց այգու մեջտեղը: Բաժակներ բերեց, փայտե մեծ շերեփն էլ վերցրեց, որ լցնի: Անթառամ մայրիկը սկուտեղը ձեռքին պատրաստ կանգնել էր, որ տանի բաժանի մարդկանց:

Անախասի ուրախությանը չափ չկար, մեկ այս հյուրի ոտքերին էր փարվում, մեկ այն: Հովսեփը շերեփը դուրս քաշեց թանով լի կճուճից ու, հանկարծակիի եկած, շերեփը ձեռքից գցեց:

— Ի՞նչ է, ի՞նչ պատահեց,— հետաքրքրվեցին հյուրերը:

— Մուկն ընկել է կճուճը,— զզվանքով ասաց Հովսեփն ու մուկը շերեփի հետ միասին շպրտեց ուղիղ Անախասի քթի տակ: Անախասը քիչ մնաց ամոթից ուշաթափվեր: Աչքերը լցվեցին: Անթառամ տատիկը ծնկներին խփեց:

— Երկրի մեջ խայտառակ էղանք, էս ի՜նչ բան էր...— ու չանչ արեց Անախասի վրա:

Անախասը դողաց վիրավորանքից: Նայեց դեմի ուռած-փքված մկանն ու սիրտը կծկվեց զայրույթից: Արտասունքը այրեց կոպերը: Մի մուկն աչքին երկուսը դարձավ, հետո՝ երեքը, չորսը... Նա թաթով սրբեց աչքերի արտասուքն ու մոտեցավ, ուշադիր նայեց մկան երեսին: Ճանաչեց: Մստոն էր: Անախասն ուժասպառ ետ քաշվեց: Սոսկաց: Քիչ մնաց զզվումից խելքը թռցներ:

Անթառամ տատիկը մածունից թան պատրաստեց հյուրերի համար: Նրանք խմում էին թանն ու քննադատում Անախասին, որ մի մուկ էլ չի կարողացել բռնել:

Բոլորը նստած ծառերի հովին մտերիմ զրուցում էին, սրտաբուխ ծիծաղում, իսկ այգու մի անկյունում կուչ էր եկել Անախասն ու կյանքում առաջին անգամ լալիս էր դառն արցունքներով:

ձավ, որտեղ մտանք պարանների օգնությամբ։ Առջևը պատ էր շարված։ Զարեհ իշխանը, տեղացիների կոչած Զառնի իշխանը, իր 500 քաջերով էստեղից կռվել է օտարերկրյա զավթիչների դեմ, որոնք ներխուժել են Գուգարաց աշխարհը։ Քարանձավում երկու բաժանմունք կար. մինում ապաստանել են կանայք, իսկ մյուսում՝ տղամարդիկ։ Զարեհի քարանձավում կար «կաթկթան» աղբյուր, որ երևի պաշարվածներին խմելու ջուր է մատակարարել։

Հյուրի հետաքրքրությունը գրնալով ավելանում էր։

— Իսկ ուրիշ գրքեր կամ վիմագիր քարեր չկայի՞ն այնտեղ։

— Վարժապե՛տ, օրը շուտ մթնեց, դրա համար էլ չուզեցինք քարանձավի խորքերը գնալ։ Անդեն մարդն ի՞նչի է նման։ Մեկ էլ քարանձավում ինչ-որ ձայներ էին լսվում։ Հե՞շտ է։ Մի սաղմոս էլ ընկերս գտավ՝ նկարազարդ ու ոսկեփայլ կողքով։ Սիրտ չարինք ավելին որոնել, շտապ դուրս եկանք քարանձավից ու պարաններով իջանք ձորը։

— Իսկ ո՞ւր է ընկերոջդ գտած Սաղմոսը։

— Ես նրան կանչել եմ։ Ուր որ է կգա։



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Հայրս էլի ուրիշ բաներ պատմեց Զարեհի քարանձավի մասին, երբ ներս մտավ մայրս ու ճաշի հրավիրեց։

Ճաշի ժամանակ հայտնվեց հորս ընկերը՝ կեղտոտ թաշկինակի մեջ փաթաթած Սաղմոսով։ Բարակ, կեռ ու ծայրերը վեր թռած չստերը հանելով՝ նա նստեց և ակնածանքով նայեց Թիֆլիսեցուն։

— Տեսնե՞մ Սաղմոսդ, բարեկա՛մ,— ասաց նա նորեկին։

Թիֆլիսեցին թերթեց գիրքը, երկար նայեց սրբապատկերներին, ապա ոսկեզօծ կազմին ու հաստ պահպանակին։ Նրան թըվաց, որ պահպանակն ավելի հընադարյան է իր հետաքրքիր կողպեքով։ Նայելով ձեռագրին, նա հրճվեց ու ասաց ցածր ձայնով.

— Բոլորագիր է, նշանակում է գրված է տասներկուերորդ դարում։

Ապա սկսեց կարդալ Սաղմոսը, որ հարուստ էր փառագրով՝ ծաղկագրերով, թռչնագրերով ու այլ զարդագրերով։

Թիֆլիսեցին ընկել էր խոհերի մեջ։

— Արութի՛ն,— դարձավ հայրս իր ընկերոջը,— ասա, թե որտեղից գտար այդ գիրքը ու էլ ինչ բաներ տեսար քարանձավում։

— Վարժապե՛տ, քարանձավում գանձեր շատ կան, որից երկուսը միայն կարողացանք մեզ հետ բերել։ Իմ գտած գիրքն էլ ինձ գրավեց իր նկարներով. այնտեղ կար մի ծանր գիրք ևս, որ ես չկարողացա վերցնել։ Մեկ էլ որ մտնեմ, թե հոգիս էլ տամ, դուրս կբերեմ։ Քարանձավը զարհուրելի է, վարժապետ, բարձրանալն ու իջնելը՝ մի մահ... Ես վերջացրի։

Հայրս ու Թիֆլիսից եկած հյուրը կուշտ ծիծաղեցին, որովհետև Արութինի բերանից բառերը կա՛րծես աքցանով էին քաշում։



Եղե՞լ եք Մատենադարանում, որին այցելության են գալիս աշխարհի զբոսաշրջիկներն ու մասնագետները։

Մատենադարանի գլխավոր սրահի ծանրաշարժ դռնից ներս մտնելիս շուռ եկեք դեպի ձախ և կտեսնեք ապակեպատ դարակի մեջ տեղադրված մի մատյան, որի տակը գրված է՝ «Քարացած ձեռագիր. գտնված է Հաղպատ—Սանահինի քարայրում, 1872 թ.»։

Ու այսքան միայն...

Այդ հենց այն քարացած ձեռագիրն է, որի մասին պատմեցինք։ Իսկ Թիֆլիսից եկած հյուրը ականավոր բանասեր Ալ. Երիցյանն էր, որը պատճառ է դարձել մեր մշակույթի մի շարք հուշարձանները դուրս բերելու քարանձավից և փրկելով հասցրել է մեզ։

Եվ անպայման կգա այն օրը, երբ գիտությունը իր ամենազոր բանալիով կկարողանա բաց անել այդ քարացած հուշարձանի լեզուն ու պատմել մեզ նրա բովանդակությունը...

ԱԲՐ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ԱՅԴ ՈՒՐԱԽ, ՆՇԱՆԱՎՈՐ ՕՐԸ

Գյուլնարան, Մարինեն ու Անահիտը մի ցուցափեղկից մյուսին էին անցնում, երբեմն էլ հարցնում իրենց ղեկավարից.

— Ընկե՛ր Թոփուզյան, սա ի՞նչ նյութից է պատրաստված:

Հետո բլոկնոտներում ինչ-որ նշումներ էին անում. Երևան վերադառնալուց հետո դպրոցում պետք է պատմեին Մոսկվայից ստացած տպավորությունների, դպրոցականների համամիութենական ցուցահանդեսի մասին:

Միության հարյուրավոր դպրոցներից աշխատանքներ էին ուղարկել: Դրանք շատ հետաքրքիր էին, բայց աղջիկները ամենից երկար կանգնեցին Վիլնյուսի երեխաների պատրաստած գործերի մոտ: Լիտվացի դպրոցականները ցորենի ծղոտը կտրատել էին, սոսնձել սև տախտակի վրա ու ստացել ամենաքավմական ու գեղեցիկ պատկերներ:

Անցան օրեր, ամիսներ: Գյուլնարան չէր կարողանում մոռանալ վիլնյուսցի երեխաների ստեղծագործությունները: Ամռանը նա գնաց հայրենի գյուղ՝ Եղվարդ: Մի մեծ խուրձ ծղոտ փաթաթեց՝ տուն բերելու համար:

— Այդ ո՞ւր ես տանում,— հարցրեց տատը:

— Տատի՛կ, շենքեր եմ սարքելու:

— Ծղոտից շենքե՞ր,— զարմացավ տատը:

Եվ հենց այս տարի, տարեվերջյան ցուցահանդեսում պատին երևացին ծղոտից պատրաստված՝ Մատենադարանի, օպերային թատրոնի, կոնսերվատորիայի, կոնյակի և գինու գործարանների, Կառավարական տան շենքերը: Դրանց տակ գրված էին հեղինակների անունները՝ Գյուլնարա Մկրտչյան, Անահիտ Հովակիմյան, Ռուզաննա Ավետիսյան...

Արևը ներս ընկավ դպրոցի 3-րդ հարկի պատուհանից: Տիկնիկները ճմլկոտացին, աչքները տրորեցին.

— Ի՞նչ շատ ենք քնել:

Հետո նրանք նայեցին շուրջը: Ամեն ինչ կարգին էր. դիմացի պատին փակցված ֆաներայով «դասարանի» մեջ աշակերտները լուռ լսում էին, ուսուցիչը փայտիկը ձեռքին քարտեզի մոտ դաս էր բացատրում: Դա Մարգարյան Գևորգն է պատրաստել և անունն էլ դրել. «Դասարան»: Կողք-կողքի դրված են Գևորգի մյուս աշխատանքները. «Խորտկարան», «Պարենային խանութ», Թումանյանի տուն-թանգարանի մակետը: Իսկ «Գյուղական հարսանիքից» կարծես զուռնայի ձայն էր գալիս:

Հանկարծ տիկնիկները տեսան, որ դռան մոտ շատ մարդիկ են հավաքվում. փոքրեր, մեծեր: Մեծերից մեկը կտրեց ժապավենը, ու բոլորը ներս եկան: Սկսեցին ուսումնասիրել իրենց: «Հիմա ամեն ինչ կփչացնեն»,— վախեցան տիկնիկները: Բայց նրանք տեսան նաև իրենց տերերին՝ «Տնարարության ու ձեռքի աշխատանքի» խմբակի անդամներ Անահիտին, Վերգինեին, Գևորգին, Ալեքսանդրին... և հանգստացան: Նրանց ղեկավարը՝ ուսուցչուհի ընկեր Թոփուզյանը, հյուրերին բացատրություններ էր տալիս.

— Վարպետները Էրեբունի քաղաքն են կառուցում: Այս գործը 7-րդ դասարանցի Ալեքսանդր Ջալալյանն է կատարել. շնորհալի տղա է:

Ալեքսանդրը մասնակցել է նաև «Կոմիտաս» կոմպոզիցիոն աշխատանքին: Տուֆե սալիկները միացրել են, կազմել պատ: Պատի վրա Կոմիտասի դիմաքանդակն է, կողքին՝ ծաղիկներ, կռունկ, Էջմիածնի եկեղեցին: Սալիկների մոտ մոմակալ է կախված: Մոմերի պատրույգները երկարել են, մոմը հալվել է, թափվել...

Միջանցքի ծայրում փայլփլում է դեղին ֆոլգան: Այդ հասարակ նյութի վրա աշխատել է Գյուլնարան ու ստեղծել Մեսրոպ Մաշտոցի կերպարը: Տպավորությունների գրքում գրված է. «Այս գործը դպրոցի սահմաններից դուրս էլ կարելի է ցուցադրել»: Այցելուները հիանում են Ռուզաննա Վարդանյանի, Արմինե Ավետիսյանի նկարներով, 8-րդ դասարանցիներ Վերգինեի, Նազիկի, Անահիտի հսկայական կտավով: Դա գյուղական մի պատկեր է, որ պատրաստել են ներկված ձվի կճեպներից:

Երևանի № 78 դպրոցում շատ նուրբ աշխատանքներ կան, որոնք պատրաստված են ամենատարբեր ու հասարակ նյութերից. եղեգն, բրդյա թելեր, բալի կորիզներ, ֆաներա և այլն: Իսկ Գևորգի ձեռքի տակ ապակե սովորական խողովակները դարձել են արագիլներ, բամբուկե պուրակ՝ այնպիսի հուշանվերներ, որ կարելի է տանել բարեկամին՝ նրա անվանակոչության օրը: Իհարկե, Գևորգն այդ ամենն արել է ըսպիրտայրոցի օգնությամբ: Իսկ Հրաչիկի ու Մայայի «գործիքները» իրենց ձեռքերն են եղել, երբ նրանք պենոպլաստից, կտորներից ու եղեգնի ձողերից ձիավորներ, տիկնիկներ, կենդանիներ են ստեղծել:

Եթե դպրոցի աղջիկների հագին գեղեցիկ, ասեղնագործած հագուստներ, հյուսած ժակետներ տեսներ, իմացեք, որ իրենք են այդ ամենը կատարել:

...Տիկնիկները ուշի-ուշով հետևեցին մարդկանց. ի՞նչ երկար են նրանք նայում: Չէ, բոլորովին էլ վատը չեն մեծահասակները. փոքրերի շնորհքը նրանք գիտեն գնահատել:

Հյուրերը գնացին: Տիկնիկներն այնպե՜ս էին հոգնել: Ի՜նչ ուրախ, աղմկալից, բայց և նշանավոր էր այդ օրը:

ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 10 Հոկտեմբեր 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*

Ի տեղի գլխավոր խմբագրի՝ Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԳԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56-32-72, 2-68-16, 56-14-96:*

ՎՖ 05682: Պատվեր՝ 995: Տպաքանակ՝ 54500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 15 X, 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.






Կարո՞ղ ես թվարկել այն գործիքները, որոնք նկարված են այստեղ:









+



+



1151

## ՈՒՇԱԴԻ՞Ր ԵՍ ԱՐԴՅՈՔ

Ուշադի՛ր նայիր վերնի նկարին և աշխատիր հիշել, թե ի՞նչ թիվ է կրում վեց մարդուկներից ամեն մեկը:

Հիմա թղթով ծածկիր վերնի նկարն ու նայիր մյուսին: Յուրաքանչյուր մարդուկի ոտքերի տակ գտնվող քառակուսիներում գրիր համապատասխան թիվը և կատարիր գումարում: Եթե գումարը կհամապատասխանի գծի տակ գրված թվին, ինքդ քեզ կարող ես «գերազանց» նշանակել քո ուշադրության համար:



Այս հրթիռներից ո՞րն է թռչում դեպի Լուսին, ո՞րը դեպի Սատուրն և ո՞րը՝ դեպի Մարս:



Այս գնդակներից ո՞րը նման չէ մյուսներին:

## Պ Ա Տ Ա Ս Խ Ա Ն Ն Ե Ր

**«Պիոներ» № 7. «ԱՂՔԱՏ ԱՍՊԵՏԻ ԴՈՒՍՏՐԵՐԸ»**

Ապրիլի 6-ին Էլիկի ծննդյան օրն էր. այդ օրը փողրդին տված նրա պատասխանը ճիշտ չէր: Բայց հաջորդ օրը, ապրիլի 7-ին ասելով «երեկ», նա ճիշտ պատասխան էր տվել:

Ժաննայի ծննդյան օրը ապրիլի 7-ին էր: Նախորդ օրը պատասխանելով «վաղը», նա ճիշտն էր ասել, իսկ ծննդյան օրը շեղվել էր ճշմարտությունից:

**«Պիոներ» № 8. «ՈՒՐԱԽ ԺԱՄԱՆՑ»**

1. 35 քառակուսի
2. 29 քառակուսի




**«ՇՎԵՅՑԱՐԱՑԻ ԺԱՄԱԳՈՐԾԻ ԿՏԱԿԸ»**

Խելացի ենթավարպետը ժամացույցի թվատախտակը բաժանել էր այսպես.



# Բաժանորդագրվեցե՛ք «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ




## ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵ՛Ր

Սկսվել է ձեր ամսագրերի՝ «Պիոների» և «Ծիծեռնակի» 1970 թվականի բաժանորդագ ությունը:

1970 թվականին ձեր սիրելի ամսագրերը լույս կտեսնեն ավելի շքեղ և ավելի հարուստ բովանդակությամբ: Ամսագրերի էջերում դուք կգտնեք հետաքրքիր պատմըվածքներ ու հեքիաթներ, զըրույցներ ու ակնարկներ, գունազարդ նկարներ ու գծագրեր: Դուք կկարդաք ձեր պիոներական աշխատանքներին օգնող շատ նյութեր, ինչպես նաև նյութեր գիտության, տեխնիկայի և արվեստի նորությունների մասին: Ամսագրերի էջերում տպագրված վերատպություններով դուք կհարստացնեք ձեր անձնական և դպրոցի կոլեկցիաները:

Երկու ամսագրերում էլ առատ նյութեր կտրվեն ձեր ժամանցը լավ անցկացնելու համար:

*Բաժանորդագրվեցե՛ք «Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերին։*

Բաժանորդագրության պայմաններն են՝

**«ՊԻՈՆԵՐ»**

3 ամիսը — 30 կ.
6 ամիսը — 60 կ.
մեկ տարին — 1 ռ. 20 կ.

**«ԾԻԾԵՌՆԱԿ»**

3 ամիսը — 30 կ.
6 ամիսը — 60 կ.
մեկ տարին — 1 ռ. 20 կ.



ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ